# *Տիգրան Գորշ*

## *անտիպ*



*խոհափիլիսոփայական մտքերի ժողովածու (2022-2024)*

**1**

*Երբ անգամ հողն ունի դինամիկա ու չկան անփոփոխելի սահմաններ,*
*Մեկն իր հույսն է դարձրել տապանաքար, մեկը՝ հուսահատությունը,*
*Մեկն իր հավատը, մեկը՝ անհավատությունը,*
*Մեկն իր իմացությունը, մեկը՝ իմանալու անկարողությունը,*
*…*
*Իսկ գերեզմանատան դարպասին գրված է*
***«Այստեղ հանգչում է բանականությունը»:***

**2**

*Չի կարող ջրայինն ազատ լինել օդում, կամ ցամաքում, օդայինը և/կամ ցամաքայինը՝ ջրում, երկկենցաղն էլ՝ համադրությունից դուրս… . նշանակում է՝ յուրաքանչյուր գոյակ ազատության իր առավելագույնին կարող է հասնել միայն իր բնական պարագայում: Սա այն մասին, թե ինչ է նշանակում հավասարությունը բնականորեն և գիտակցականորեն տարբերվող մարդկանց միջև, ու ինչին է այն միտված իրականում: Բայց, թերևս, ճշմարտությունն այնքան պարզ է, որ սա չարժե անգամ վերնագրել «Հավասարության հակառակ կողմը», այլ, պարզապես, «Ստրկության արտացոլանք», որը երևակվում է հավասարություն միայն այն բանի համար, որ նրանում յուրաքանչյուրը տեսնում է իրեն:*



*Հավասարություն քարոզելով՝ որպես հավասարվելու աստիճան երբեք չեն ընտրում ամենաուժեղը, բարձրը, իմաստունը …, ըստ այդմ պարզ է, թե հավասարությունն ինչին է միտված ու թե ինչու է հավասարության մասին ամենաբարձրը գոռում տկարը, ցածրը, վախկոտը …*

**3**

*Հույզերում, զգացմունքներում, կրքերում անկեղծությու՞ն:*
*Ջրո նշանակություն, երբ չկա գիտակցական ինքնուրույնություն, միայն ավելորդ աղմուկ:*



***4***

*Դարը հարմար է նրանով, որ ցանկացած հիմարություն կարող է ունենալ հետևորդություն, ու անհարմար նրանով, որ միայնակի հանդիպելն էլ իմաստնություն գտնելու երաշխիք չէ, քանզի նա էլ, հաճախ, նույն, բայց ամոթխա՛ծ հիմարն է:*

*Դարը հարմար է դարանակալելու և, որպես «վարակ», դուրս հորդելու համար …*

***5***

*Եթե (դեռ) ունակ չենք աստվածներին ժխտող ինքնարարմամբ, ապա, գոնե, իմանալ է պետք, որ օտար հողում ծնված աստվածները կարող են լինել իմացության աղբյուր, անգամ ընկեր, բայց առաջնորդման մեջ նրանք ոչ միայն անպիտան են, այլ պոտենցիալ դավաճան՝ պատմական ինչ-որ հանգրվանում անպայման դրսևորվող:*

*Ու ինչպիսի՜ միամտություն, թե պիտի կարծենք, որ աստվածները չունեն երկրային ծնունդ և հայրենական պատկանելիություն:*



*Եթե յուրաքանչյուր կենդանի հնարավորություն ունենար պատկերել իր աստծուն, ապա երկրայինից զատ ու ճիշտ դրա նմանությամբ կլիներ նաև երկնային գազանանոց, որի մուտքին, սակայն, տոմսավաճառն էլի կլիներ մարդը:*

***6***

*Մեկ մարդը կարող է իր մեջ ամփոփել և կրել մարդկության ամբողջ ողբերգությունը, իսկ մարդկությունը չի կարող կրել մեկ մարդու անգամ սովորական մի տխրություն: Սա այն մասին, թե ինչքան անբովանդակ հասկացություն է մարդկությունը ու ինչքան իմաստազուրկ է նրան դարձնելը ինքնախոսության առարկա, երկխոսության՝ կողմ:*

***7***

*Հույսը ծնվում է իմացության բացից և մահանում է իմացությամբ:*

*Հույս փնտրում են, երբ չգիտեն, անկարող են իմանալ, ծուլանում են, կամ պարզապես չեն ուզում:*

*Հույսը չի մահանում վերջում, այն հենց մահվան ազդարար է, երբ միակ ապավենն է:*

*Ամենն իմանալու անհնարինության հանգամանքում ավելի արդյունավետ է հույսը փոխարինել չգիտեմ-ով, հույսի համեմատ՝ չգիտեմ-ը միշտ ավելի մոտ է ճշմարտությանը:*



***8***

*Անատամի ներքին խաղաղության ձգտումը, այդ ձգտման մեջ ընդունած անհասկանալի կեցվածքն ու դեմքի արտահայտությունն ինչ-որ տեղ հասկանալի է, բայց երբ դրան հետևորդ և/կամ գաղափարակիր է դառնում ոսկոր աղալու ատամներ ունեցողը, ով դեռ բավականաչափ չի էլ հալածվել կյանքի կողմից, հասկանում ես, որ մի օր բանական գոյակը պետք է բաժանվի մարդու և ինքնարարի, ու վերջինս պետք է մարդուն իշխի ինչպես անասունի:*



*Այլից զատ, ինքնարարներն իրենց մեջ պետք է կրեն մարդ բանականի «ցեղասպանության» երազանքը և օրերից մի օր պետք է իրագործեն այն: Իսկ մինչ այդ, նաև իբրև մեծ գործին պատրաստվելու վարժանք, առանձնաբար «սպանելու» նախասիրությամբ պետք է զբաղվեն բավականության մեծագույն զգացումով:*

***9***

*Բարոյականն ուզում է ամենուր տեսնել առաքինի մարդկանց, բայց չի էլ հրաժարվում արդյունքից, որը կարող է ստանալ միայն անառակը, ու սա կոչվում է՝ բարոյականի անբարոյականություն:*



*Մտքերի ընկալման գործում ամբոխն անատամ պառավ է, նրան պետք են դյուրամարս և հեշտ ծամվող դատողություններ: Նրա համար միանշանակ է կարծր ամեն բան, քանզի նա ատամ չունի՝ հասկանալու համար, որ որոշները, պարզապես, պտղապատյանով են: Նա նաև բկլիկ է ու քաղցրակեր՝ բերանն առնում է ամեն բան, ինչն արտաքնապես ախորժալի է ու քաղցր, ինչն օգտագործելով էլ նրան հաճախ թունավորում են, երբ առանց կոտրելու կուլ է տալիս քաղցրը, իսկ միջուկը պարզվում է՝ թույն է:*

*Ուրեմն, քանի որ միայն կարծրությունը չի երաշխավորում պառավի բերանում հայտնվելուց խուսափելը, որից հետո նա լմլմացնելով և թքելով, կամ աղիներով անմարս շրջանառելով փչացնում է ամեն բարձր բան, անհատականություններին ուղղված դատողությունը ոչ միայն և ոչ այնքան կարծր պտղապատյանով պետք է պատվի, այլ՝ փշերով ու դառը համով: Էլ ավելի լավ, երբ նույնն արվի բարոյականությանն անընդունելի, քանզի ինչպես պարզվում է բարոյականությունը պառավ է, ամբոխինն էլ պառաված կույսի է:*





*Երբ հասարակությունն անհատականության գերեզմանոց է, միամտություն է կարծել, որ այն երբևէ կարող է վերածվել բարեբեր հողի, եթե նրանում բավականաչափ առանձնյակներ թաղվեն: Մարդկանց ձգտումներն այստեղ այլ բան չեն, քան տապանաքարերի մրցատենդ՝ ըստ նկատելիության, շքեղության, երկարակեցության, որոնց միջով անվերջ շրջում է մարդկային երազանքի մի ուրվական. ձեռք բերել անմահություն գերեզմանոցում:*

*Նրանք, ովքեր երբևէ տարվել են հասարակությունն անհատականությունների պարտեզի վերածելու մտքով, ի վերջո հանգել են այն իսպառ ոչնչացնելու ցանկության, եթե չեն մոլորվել՝ իբրև հումուս ինքնազոհաբերվելու կեղծ բարոյապաշտությամբ:*



*Ով չափազանց երկար է արժանանում ամբոխի հավանությանը, ի վերջո, դադարում է ջոկվել անասունից:*



*Դեռ ոչ մի գիտակցություն չի հաջողացրել ճողոպրել բարոյականությունից: Ինչքա՜ն բծեր են ծնվում արվեստում, որոնք շատերին սիրելի են դառնում միայն այն բանի համար, որ դրանցում արտահայտվում է յուրաքանչյուրի կուսազրկումից մինչև փչացում հուզական ողջ կենսափորձը:*



*Բավական է ներշնչել մարդուն իր վեհ լինելը, երբ տակավին միջակ է առօրյա իրականության մեջ ու նա երբեք չի ազատվի անհանգստությունից, որը նրան օր օրի դարձնում է ավելի տականք, քան կար՝ իբրև իր ստրկության մեջ բարոյական արարած:*

***10***

*Առաջին սեքսը սկիզբն է կնոջ ազատականացման, տղամարդու՝ կախվածության: Նրանց հետագա հանդիպումները բուռն են այնքան, ինչքան մեծ է մեկի ինքնաբավությունը, մյուսի՝ վրիժառությունը:*

***11***

*Անմեղությունն ու քավությունը քարոզվում է միայն այն բանի համար, որ մարդիկ չհասկանան մեղքի (ինքն)արարչությունը ու մնան փրկիչներին գերի:*

*Բանականին պետք է խրախուսվեր իմաստավորումը, փրկչության մերժումը:*





*Սպանի՛ր ներսիդ փրկչին՝ հարգի՛ր ոչխար ուտելու գայլի առաքելությունը …*



*«Մեզ ոչինչ չի՛ փրկի». կյանքին տրվելու ինչքա՜ն գայթակղություն կա այս կարճ արտահայտության մեջ, ու, միաժամանակ, (ինքնա)հաղթահարման ինչպիսի խթան:*



*«Փրկե՛մ քեզ»-ը հնչում է իբրև բռնաբարելու ցանկություն, «Փրկի՛ր ինձ»-ը՝ բռնաբարվելու: Սրանց հանդիպումն ինքնին համաձայնություն է, որը երևույթում փոխում է միայն այն, որ արարքում բացառում է հանցակազմը:*

*Դե ինչ, սա էլ վատ սեքս չէ անսերության պայմաններում, թերևս միակ ձևն է:*

*Իսկ առողջ բանականության համար երկուսն էլ հնչում են իբրև հայհոյանք:*



*Ընդհանրապես, լռությունը հակառակորդի համար ավելի մեծ անհանգստություն է, քան վրեժ լուծելու մասին գոռալը: Իսկ «գրական ողբաբառաչանքը», որով իբրև ցավ են ապրում, նախ գրավում է գիշատչի ուշադրությունը, ապա՝ փրկչի, բայց նրանցից որն էլ առաջինը հասնի, վերջը նույնն է: Վիրավո՞ր ես՝ լեզուդ արնաշաղախ արա …*



*«Ճիշտ դուրս գալու» գայթակղությունն այնքան մեծ է, որ անգամ նա, ով կանխատեսում է աշխարհի վերջը, սակայն աշխարհը դեռ շարունակում է գոյություն ունենալ, հիասթափությունից առավել ոչ մի այլ զգացում չի ունենում: Ուստի, այն պահից սկսած, երբ ուրիշ մեկը կանխատեսությամբ փորձում է փրկել փորձանքից, ձեռք ես բերում զգուշանալու ևս մեկ առիթ՝ հենց փրկողից:*

***12***

*Ի վերջո, «Կյանքը բեմ է, մարդիկ՝ դերասան» վերնագրով ապրողի կյանքը համառոտագրվում է «Կյանքը կրկես է, մարդիկ՝ կապիկ» ամփոփագրով:*

***13***

*Ինչպես մսակերի քիմքին գառը, գոճին, ճուտը, …, կրոնի երախին՝ մանկան հոգին:*





*Հանիբալիզմ. երբ կրոնականը ոչխար է ուտում:*



*Օ՜, քահանա՜, եթե միայն աստծուդ հավատայիր այնքան, ինչքան ուզում ես, որ քեզ հավատան, պապանձվելուդ պիտի արձագանքեի՝ Ա՜ՄԵ՜Ն:*

***14***

*Անցյալամույն գիտակցությունը չի կարող լինել նախաձեռնող, հետևաբար և արարող: Անգամ նրա ակնկալիքները, ժամանակի մեջ, ավելին չեն լինում, քան միանգամիցն է, որի պատճառով՝ նա ուղիղ կախվածության մեջ է հանգամանքներից, որոնցում չկա իր կամքը: Արդյունքում, այն, ինչ կարողանում է ապրել ներկայում, առավելապես հիասթափությունն է, ինչն էլ ավելի է խորացնում նրա շարժումն անցյալ, որտեղ նա բավարարման մոլուցքով փորձում է գտնել նոր մխիթարանք, կամ ուրախություն, քանզի նրա բոլոր բացատրություններն անցյալում են, անգամ նրա գայրույթն է անցյալում, վերջապես՝ նրա ամբողջ գոյությունը:*

*Բայց հիշողությամբ սահմանափակված անցյալը նրան մի օր զրկում է նաև այդ ինքնախաբեությունից և ստիպում հայտնվել խելացնոր կրկնության մեջ՝ իսպառ ոչնչացնելով դատողունակությունը, ընդհուպ երևակայությունը:*

*Ի վերջո, անցյալամույն գիտակցությունը անցյալում էլ մահանում է՝ ներկայում մնալով ամենայն բանականը փչացնող ժանտախտ:*



*Հանրային կրթությունը (նախադպրոցականից մինչև բարձրագույն, ներառյալ դրանց բոլոր տարա(ենթա)տեսակները) հպատակի կրթություն է: Դրանով անձը կարող է ձևավորել և/կամ բարձրացնել իր սոցիալական դիրքը, այլ կերպ՝ հպատակի իր աստիճանակարգը, ընդհուպ հասնել հանրային ղեկավարման բարձրագույն աստիճանին, բայց չի կարող դադարել կոչվել հպատակ:*

*Այն, ինչը համարվում է արարչական կրթություն (տիրական, աստվածային), կարող է լինել բացառապես ինքնակրթությամբ, բնատուր շնորհով, կամ այնպիսի կրթությամբ, որը փակ է հանրության համար և տրվում է հատուկ առանձնյակներին:*

*Հպատակի կրթությունը հրաշալի բնութագրվում է «Սովորի՜ր, որ մարդ դառնաս» հայտնի պատգամով ու հենց դրանով էլ ավարտվում է, իսկ արարչական կրթությունն ունի մեկ նպատակ՝ ձգտել ավելիին, քան մարդն է, որի համար և առաջնորդվում է արարչական մեկ պատգամով՝ ճանաչի՜ր:*



**15**

*Արի ու տես, որ հենց անտարբերությունն է այն հումքը, որը մարդու մեջ պետք է մշակել դաստիարակության այնպիսի աստիճանի, որ սոցիալական հաղորդակցության մեջ նվազագույնի հասցվի միմյանց անձնական տիրույթի անձեռնմխելիության խախտումը ու, նաև, վիրավորանքն ու անարգանքը, ամփոփ՝ լինի տարածությունը՝ պայմանականորեն կոչվող հարգանք:*

*Միթե այն բարոյականը, որի շուրթերից սերը հնչում է իբրև հանրային համակեցության մաղթանք, կամ պահանջ, պատկերացնում է զարշելի տեսարանը, երբ հանկարծ բոլորը սիրում են իրար. մաքուրն ու փնթին, գիտակն ու տգետը, վերջապես մարդն ու անասունը, և այդ «հակահիգիենիկ» միջակության մեջ տեսնու՞մ է արդյոք իր երեսպաշտ դերը և ի՞նչ է կոչվում այն՝ միթե՞ աստված, թե, այնուամենայնիվ, նա իր տգիտության մեջ հավատավոր է այնքան, ինչքան հեռու է սիրո ընկալումից՝ իբրև բարձր բանականություն:*

**16**

*Ի վերջո, կնոջ մեջ հաղթանակում է մայրը, եթե անգամ նա չի մայրանում:*

**17**

*Մեռցրու՛ խղճահարությունդ՝ հարգի՛ր մերձավորիդ ինքնը, բայց, նաև, հպարտությունդ մեռցրու, որ ուրիշինը չանարգի քոնը:*

**18**

*Ինչքան շատ է խոսում լռությունը, այնքան բառը կորցնում է իր արարչական նշանակությունը: Ի վերջո, երբ խոսում է լռության բացարձակը, բառը բացահայտում է իր կիսատող, փչացնող, անբանական էությունը:*



*Ընդհանրապես, խորհուրդ չտալը վատ խորհուրդ չէ, չբացատրելն էլ՝ վատ բացատրություն չէ: Ի վերջո, երբեմն հայհոյանքով հեռուն ուղարկելն ավելի մարդասիրական է, քան «շինված» մարդասիրությունն է:*



*Լռությունը մշտապես բացում է հասկանալու նոր հորիզոններ:*





*Երբ հանրայնացնում են բոլոր հույզերը, որոնք ընդհանուր առմամբ ոչ մեկին պետք չեն, անկախ դրանց ինչպիսին լինելուց և իրական մտադրությունից՝ դրանք վերածվում են սոցիալ-գիտակցական միջավայրը աղտոտող աղբի, որից, հակառակ ազդեցությամբ, սնվում է նաև հանրայնացնողը: Բարոյականության այն խոլերան, որի վարակակիրն ու տարածողն են, արդյունքն է նրա, որ մարդիկ չունեն մտքերի և հույզերի ինքնավարության բանական մաքրասիրություն: Իսկ եթե մեկին թվում է, որ դուրս նետելն ապահովում է ներսի մաքրությունը, ապա դա միայն այն բանի համար, որ արդեն գերազանցել է մարդուն՝ իբրև խոզ:*



*Գիտեմ՝ կա հաղորդակցության աստիճան, որտեղ բառը խավարամտության և մարդայնացման հատկանիշ է:*



*Լռում են այն որոշումների մասին, որոնցում անվերապահ են, աներկբա:*



*Ե՛ս էլ ունեմ համաշխարհային անարխիայի պատկերացում, որը ծագում է բոլորի բացարձակ անկեղծացման հետևանքով, ինչից համատարած գոյանում են արյան և արտասուքի գետեր, ողբի և անզուսպ ծիծաղի միախառնությամբ խլացնող աղմուկ, ցավի և խնդության հեշտանք …*

*Հետո ամեն ինչ ավարտվում է մարդուն արթնացնող խո՛րը լռությամբ:*

**19**

*Պե՞տք է արդյոք միջամտել հովվի գործերին: Ոչ, երբ այդ կերպ իմանում ենք որտեղ շրջանցել աղմուկն ու գարշահոտը: Իսկ երբ հոտը քշվում է անդունդը, առավել ևս՝ պետք է խրախուսել այն:*

**20**

*Երեխային փաղաքշելիս ոչ մեկի մտքով չի անցնում, որ նա, գուցե, ապագա հրեշ է. ահա՛ այդտեղ էլ սիրում է զվարճանալ ները …*

**21**

*Հենց կուտը կերար ու քեզ երևակայեցիր ինչ-որ մեկին ուսուցիչ, այդ պահից ներ մեկնարկում է բթացումդ:*



**22**

*Ինքնատիպությունդ զգռում է ամբոխի ախորժակը ոչ այն բանի համար, որ համեղ ես, այլ որովհետև, որպես անսովոր բան, շարժում ես իմանալու նրա հետաքրքրասիրությունը, իսկ նա իմանալու միայն մեկ ձև ունի՝ խժռել: Բայց գազանը նաև զգուշավորություն ունի՝ մոտենում է գլուխը կախ, պոչը խաղացնելով, ու եթե միամտաբար տարվում ես նրան շոյելու, առավել ևս նրան վարժեցնելու հպարտությամբ (թեկուզ սիրով), անխուսափելիորեն հայտնվում ես նրա երախում:*

*Այդուհետ վերածվում ես նրա ճաշակի կամակատարի, կամ ընդդիմանում ես ու հոշոտվում:*



*Մարդակեր(տ)պ որևէ աստված չի հաջողացրել փրկվել մարդուց, իսկ արարչությունները, որոնք նա համարում է իր կամքից դուրս (վեր), անպայման փորձում է մեռցնել՝ ըստ առեղծվածի ընկալման իր գերադրական ու մեկ աստիճանի՝ սեփական մահկանացության: Նա այդ կերպ, ու հենց միայն դրա համար, մեռցնում է նաև սերը, ու սիրում է ամենայն մահավորը:*

**23**

*Հույսն առաջին տեղում՝ անհուսության վկայություն է, անհուսությունը՝ անկարողության, անկարողությունը՝ չիմացության, իսկ չիմացությամբ հանգամանքին տրվելը հիմարություն է, արկածախնդրություն, խաղամոլություն ..., բոլոր դեպքերում այն է, ինչում կամքը ստորադաս է հանգամանքին:*

*Հանգամանքին տրվելը իմաստնություն է միայն, երբ արվում է իմացությամբ: Միայն այդ դեպքում է կամքը մնում կենսունակ, լինում ունակ հաղորդակցվելու և հարաբերվելու հանգամանքին՝ ըստ նպատակի, ընդհուպ ուղղորդելու այն դեպի նպատակը, հետևաբար, երբ առաջնորդում է իմաստնությունը, հույսը մնում է վերջին տեղում՝ իբրև վերջին փամփուշտ, հիմնականում պահվող արժանապատիվ ինքնասպանության համար:*

*Բայց արի ու տես, որ հենց հանրային գործերում, որտեղ անկարելի է կամքը ստորադասել հանգամանքին, ավելի շատ է հնչում և առաջին տեղ բերվում հույսը՝ անվանվելով հայրենասիրություն: Ճակատամարտ՝ գուցե, բայց պատերազմում հաղթել այն սկսելով վերջին փամփուշտի՞ց ..., սա՛ էլ, գուցե, բայց դեռ երբեք չի եղել:*

**24**

*Ազատ մարդ չկա՛, կա ազատ գոյակ, ով մարդ էր:*



**25**

*Ցավալին նրանում չէ, որ մեծամասնությունն օգտագործվում է, այլ նրանում, որ օգտագործողներն էլ, առավելապես, միջակ են իրենց նպատակում և չունեն գոյության բարձր իմաստ: Իսկ ցավալին միջոցը զուր վատնելու ափսոսանքում է, ուրիշ ոչինչ:*

**26**

*Չգիտեմ՝ ինչ է ակնկալում բոլորին դիմելով միտք արտահայտող, կամ դատողություններ անող «մտահույզը», բայց ընդհանուր տեսարանում նա պատկերվում է հիմար:*

**27**

*Չի ստացվում բոլորի կյանքի հավասարումը լուծող մեկ բանաձև, որովհետև յուրաքանչյուրն իր կյանքի բացառիկ անհայտ մեծությունն է, որը չի կարող որոշվել ուրիշի (ինքնա)ճանաչողությամբ, բայց … ու շարունակվում են լցվել դասարաններ ու խմբակներ, որտեղ իմաստակն ուրիշներին վաճառում է իր (ինքնա)խաբեությունը:*

**28**

***Վերջին ինքնախոստություն՝ ինքնարարը մարդ բանականին.***

*Դու տեսնում ես ինձ բարձրում ու չես սխալվում դատողության մեջ, որ անհոգ եմ, բայց դու չես տեսել բարձրացումս ու սխալվում ես դատողության մեջ, որ անհոգի եմ: Դու չես սխալվում նաև, որ քեզ ուղղված հայացքս արհամարհանք ունի, որով, իբրև ամոթալի անցյալիս մարմնավորում, քեզ ընդմիշտ բաց եմ թողնում:*



*Այնուամենայնիվ, թեկուզ, կամ հենց միայն երաժշտություն ունենալու համար՝ անասունների մեջ մարդը սիրելի է ինձ, ու ինքս ինձ էլ, երբ երաժշտությամբ զգում եմ, որ այլ եմ, քան համոզում է բնությունը, ու ավելին, քան փորձում է դարձնել բարոյականությունը:*

**29**

***Ինքնասուզում.***

*Լինել այնտեղ, որտեղ շատերը չեն լինում,*
*հետո այնտեղ, որտեղ ոչ ոք չկա,*
*հետո՝ոչ ոք դեռ չի եղել,*
*ի վերջո այնտեղ, որտեղ ոչ ոք չի կարող լինել.*
*իմանալ, որ այլ ես, քան քեզ դարձրել են,*
*ավելին ես, քան մարդն է:*





*- Բարև՛, նյութական աշխարհ:*
*- Բարև՛, հումուս:*
*- Բարև՛, հոգևոր աշխարհ:*
*- Բարև՛, ուրվական:*
*- Բարև՛, ես:*
*- Հազա՛ր բարի, ոչնչություն:*



*- Բարև՛, Սե՛ր, ի՞նչ ես անում այդքան եռանդուն:*
*- Բարև՛, ինքնարա՛ր, գերեզման եմ փորում:*
*- Ինչու՞ այս տափաստանում:*
*- Սա սովորական տափաստան չէ, այն ինքս եմ ստեղծել՝ հպարտության ժայռը շրջելով խղճի անդունդը:*
*- Իսկ ու՞մ, կամ ինչի՞ համար է այդքան խորը գերեզմանափոսը:*
*- Այն բոլորի և ամենի, ում և ինչին երբևէ պատկանել եմ:*
*- Այսուհետ ինքդ ինչպե՞ս ես ապրելու:*
*- Մոտեցիր, բահս վերցրու …*



***Ո՛վ կաս այդտեղ, այնկողմնային.***

*Արտոնի՛ր սպանել քեզ՝ ճանաչի՛ր խիղճը,*
*Արտոնի՛ր ապրեցնել՝ ճանաչի՛ր հպարտությունը.*

*Տե՛ս, թե որտեղ են վերջանում սահմանները, որից անդին կարող է արտոնվել ինքնարարումը:*



***Ինքնասերում.***

*Արդ, որ ներկա ես, երբ չկա ոչ ոք, քե՛զ բարև,*
*Է՛լ ավելի քեզ, որ ծնվել ես այս բարևով:*



*Դարերի խորքից՝ անցյալի և ապագայի,*
*Բացասում են իրար հայացքները՝ մարդու և ինքնարարի,*
*Ապա ո՞վ եմ ես հիմա, եթե ոչ ՈՉԻՆՉ:*





***Ինքնասուզման տաղ***

*Տար ինձ հեռուները մտքի, ուր չի հասել բառը:*
*Ցույց տուր էությունը գոյակի՝ անտես մարդուս հայացքին:*
*Օգնի՛ր ինքնաիերքմամբ ճանաչել քեզ, Բարձրագույն Ես:*

***30***

*Կտակը միջոց է հաղթահարելու գոյության իմաստը չգտնելու վախը, ուրիշ ոչինչ:*

*Այն, ինչն ավագը փոխանցում է կրտսերին՝ կիսատ գործը շարունակելու խրատով, ընդամենը մահին հանձնվածի կողմից կյանքից կառչելու անհույս փորձ է:*

*Սեփական սահմանման մեջ խճճված գոյակը փորձում է դուրս գալ իր ժամանակի սահմաններից՝ չընկալելով, որ ինքնարարումից զատ չկա այլ իմաստ, հետևաբար չի կարող լինել նպատակի ժառանգություն:*

*Վերջապես, հենց միայն ինքնարարումը կարող է անհատական ձգտումից վերաճել համընդհանուրի և, իբրև այդպիսին, համարվել տեսակի գոյության ու, առհասարակ, նպատակ:*

***31***

*Եվ թող բանե՛ն ավանակները, քանզի նրանց խոստացված է ամենասիրունը:*

*Իսկ դու, ինչպես ցանկացած արարիչ, պատվո՛վ կրիր այլանդակի պիտակը, և, որպես ինքնարար, եղի՛ր ամենաայլանդակը:*

***32***

*Թե չընկալես զգացմունքի այն հաճախականությամբ, որով հաղորդվել է, ինչպե՞ս իմանաս մտքիս ամբողջականությունը, երբեմն դրանում առկա չարությունս ու չարությանս ողջ բարությունը:*

*Ու ինչպե՛ս ընկալես անհույզ մտքիս տիեզերականությունը …*

***33***

*Ճշմարտությունը հատկություն ունի անցնելու անհամեմատ նեղ բացակներով, քան կարող է փակել գիտակցությունը, դրա համար էլ, անկախ ապահովության աստիճանից, որին անվերջ ձգտում են մարդիկ, նրանց հայացքում ընդհանուր է տագնապը, որ ահա՛, ամեն ինչ ցանկացած հաջորդող պահին կարող է փլվել: Անգամ նա, ով հայտնվում է փլատակների տակ, շտապում է այն վերածել ամրոցի:*

*Անխռով նստած է մեկը փլատակների վրա, ու այն, ինչը կարող էր նրան նմանեցնել մարդուն, թաղել է փլատակներում:*





*Նա, ով հրաժարվում է բարու և չարի միջև միջակություն լինելուց, ձեռք է բերում անպայմանական ճշմարտություններ բացահայտելու երանություն, միաժամանակ ինքն իրեն վտանգում է բախման ամոթի հետ, որ դեռ ստիպված է կոչվել մարդ:*



*Ճշմարտությունը պատկերում են սուր ու վահան, այնինչ այն ավելի շատ նման է բույսի, որը կարող է ճեղքել քարը, բայց կոտրվել երկու ստի թեթև սեղմումից: Իսկ արդարությանը, առհասարակ, արժե շնորհել «խեղճերի աստված» տիտղոսը՝ ճիշտ այն մեկ խաչվածի պես, ու ճիշտ նրա պես ուղարկել անբանության:*

*Ուրեմն, եթե ճշմարտությունն իբրև սուր ու վահան, ապա միայն ինքնաճանաչողության՝ ինքնաքանդման և ինքնախաբեությունից պաշտպանության:*



*Երբ միտքը ձևակերպվում է որպես դառը ճշմարտություն, բացի այն, որ հասկանում եմ այն արտահայտողի ինքնուրույնության բացակայությունն արտահայտվող մտքում, նաև հասկանում եմ, որ նա չունի միտքն ընկալելու «համի» զգացում, քանզի ճշմարտությունը կա մաքուր օդ և կա մաքուր ջուր, ու անկախ նրանից, թե ով ինչ է ցույց տալիս ու անկախ յուրաքանչյուրի (ինքնա)խաբեության չափից, բանականությունն ապրում է ճշմարտությամբ և մեռնում՝ դրա պակասից:*



***Սեր առ ճշմարտությու՞ն:***

*Օ՜ բարոյականության խեղճ քած, իսկ արդյո՞ք երեխայիդ չես սիրում միայն այն բանի համար, որ երեխադ է ու հենց դրանով էլ կաշկանդված է ճանաչողությունդ:*

***34***

*Հիերարխիայի այլընտրանքն անարխիան է: Մարդը սրա այլընտրանքը չի գտել, ուստի անգամ հանցավորը նախընտրելի է հիերարխիայի իսպառ բացակայությունից, որպեսզի մարդը, գոնե, պահպանի հավասարությունը իր և անասունի միջև ու չլինի ավելի անասուն, քան անասունն է:*





*Առավելապես, մարդը սոցիալական էակ է, երբ բնազդները բավարարված են, բնազդային քաղցում՝ նա անասուն է: Քաղցից բավարարում միջակայքում մարդը սովորութային կենդանի է: Թե որքան հարափոփոխ են քաղցն ու բավարարումը ու թե ինչ համախականությամբ, դրանով էլ որոշվում է գիտակցության վրա ազդեցության հիմնական հանգամանքը և գտնվելու միջակայքը:*

*Ըստ այդմ, մարդ բանականը սովորութային (միջակ) արարած է, քանի դեռ չի (ինքնա)սահմանվել մարդ ինքնարար, ապա՝ ինքնարար:*

***35***

*Դժբախտություն կա միայն այն բանի համար, որ կա երջանկության գոյության պատրանք:*

***36***

*Ի հակադրություն համընդհանուր ընկալման՝ հենց մաքրամաքուր էությամբ էակը կարող է ունենալ աշխարհը պայթեցնելու կամք, հետևաբար մարդու դանդաղամահությանը դեռ երկար ժամանակ ոչինչ չի սպառնալու:*



*Որովհետև չի կարող վերադառնալ կենդանական բնականությանը ու դեռ չի ընկալում վերմարդկային բանականությունը: Մարդու այս միջակ գոյությունը մարդկային ու չափազանց մարդկային է, միջակությունը նույն մարդկայնությունն է:*



*«Բանականությունդ մոռացա՞ր». ինքնարարը ձայնեց մարդ բանականի ետևից, երբ վերջինս փորձեց նրա կյանք ներխուժել ինչպես ինքնավստահ հոգեբան, ապա ստիպված եղավ փախչել ինչպես հավատքը կորցրած քահանա:*

***37***

*Ծառն անտառում նյութափոխանակային արժեք է, տափաստանում՝ հոգևոր: Ահա՛ այն, ինչ պետք է հասկանալ կեցություն-գիտակցություն հարաբերակցության մասին: Ուրեմն նա, ով ունակ չէ իր մեջ ստեղծել ու կրել սեփական տափաստանը, հնարավորություն չունի ամբոխի մեջ մնալ բանական:*



***38***

*Գիտակցությունն, ի վերջո, զահավիժում է բարձունքից, ուր նրան հասցնում է հարաբերականությունը …*



*Քան հիասթափությունների հատիկներից թազբեհ քաշելը, ոչինչ առավել չի խաղաղեցնում, ու, միաժամանակ, ոչինչ այդչափ չի պարզեցնում իրականության ընկալումը։*

***39***

*Կրոնին տրվելուց, հոգեբանին դիմելուց, կամ կուսակցական դառնալուց առավել ազնիվ է բռնաբարվելու դասակա՛ն ձևը, բայց բարոյականությունն այստեղ քաղաքական վերապահում ունի։*



*Նրանք գնում են եկեղեցի, դիմում են հոգեբանի, …, ի վերջո, նաև ընտրում են ինքնասպանության ուղիղ ձևը։ Այն, ինչի համար նրանք անում են դա, մենք ձեռք ենք բերում ինքնաներմամբ, իսկ ինչն էլ չենք կարողանում ներել, օգտագործում ենք իբրև գիտակցությունը ճեղքող հար։*

***40***

*Այնուամենայնիվ, աստվածացնելուց առավել՝ կինը փաղաքշվում է, երբ նրան կոչում ես նեռ …*

***41***

*Ճանաչելու համար, թե ինչ կրքով են սեր անում նեռն ու աստված, բավական է հանդիպել նրան, ով կարող է մարմնավորել մենակությունը։ Ու ոչ միայն ճանաչելու համար, նաև նրանց ստեղծելու …*

***42***

*Գաղափարի գոյությունն ամենօրյա հիշատակմամբ պահելը նման է նույն մեռելին ամեն օր թաղելով հիշատակ պահելուն։*

*Քիչ դեպքերում է դա արվում այն բանի համար, որովհետև հիշատակողը հիվանդ է ինքնախաբեությամբ ու այն նրա մոտ բարդացել է մինչև աստվածացման աստիճանի։ Որպես կանոն՝ դա արվում է մարդկային խիղճ-հպարտություն-որովայն շրջանակում գտնվող հասարակ շահի համար։*



***43***

*Արհեստական բանականություն է նաև բանական էակների սովորութային միակցումը բնազդային (զգացմունքային) մակարդակում:*



*Իրականում քչերն են հասցնում ընդհանուր շտեմարանում նոր բան ավելացնել, առավելապես ծնվում ու մահանում են(ք) իբրև ինֆորմացիայի կենսաբանական կրիչներ, ընկալող-հաղորդող սարքեր: Այն, ինչը հասարակ իմաստով ընդունված է համարել (ինքնա)ճանաչողություն, այլ բան չէ, քան սովորելը գիտեցածի, այլ կերպ՝ իմանալ, թե ինչ գիտես: Մարդու մեքենայացումը մտահոգիչ չէ, մարդը հենց կա մեքենա, որը ինքնարարմանն այլընտրանք չունի, քանզի դրա հակառակը կնշանակի բնության անդառնալի վերադարձնել վերցրածը՝ընդհուպ ինքզինքը …*



*Ինքնասուզմանս մեջ հանդիպեցին մարդը, որը դեռ անասուն էր և այս վերջին խոսուն մեկը: Խլացումը, որին ստիպված էի ապավինել առաջացած անտանելի աղմուկից ազատվելու համար, իսպառ վերացրեց նաև նրանց միջև տարբերությունը:*



*Մարդ բանականի պատմություն. հերոսապատումների ժողովածու, որը ոչ ոք չի կարդալու:*



*Մարդիկ հատուկ ձգտում ունեն ժամանակ առ ժամանակ լինել «կով», որովհետև գոմաբնակներից միայն նա ունի սրբաղասվելու աստիճանի հարգանք: Բայց նրանք ավելի «կով» են, քան կովը, քանզի չեն հասկանում, որ վերջինս բարեգործ լինելու միտումնավորություն չունի:*

***44***

*Իշխում է ոչ թե մարդը, այլ ՝ հանգամանքը, եթե անգամ այն հեղինակել է մարդը, որովհետև միշտ և ցանկացած հանգամանքում կա նաև պատահականություն (չգիտակցված անհրաժեշտություն) որն անկախ է կամքից:*

*Առողջ բանականության համար սա մի դեպքում պետք է լինի զգուշացում այնտեղ, որտեղ նա աստված է խաղում գիտությամբ, մեկ այլ դեպքում՝ սպասելի հնարավորություն, որտեղ համակված է անկարողությամբ:*



**45**

*Արդարության ուրվականը զրկում է մարդուն անասնական երջանկությունից ու փոխարենը՝ տալիս ոչինչ:*



*Պատկերացնելու համար, թե ինչ նկատի ունեն մարդիկ՝ արդարություն ասելով և ինչ են ակնկալում՝ արդարադատություն պահանջելով, բավական է նկատի ունենալ, որ գրեթե ոչ մեկին չի հետաքրքրում, առավել ևս ոչ ոք չի վիճարկում վճռի ներածական և պատճառաբանական մասերը, երբ եզրափակիչ մասն օգուտ իրեն է:*

**46**

*Անտարբեր լինել ցեղակցի (չ)ապրելուն ու ցանկանալ ցեղի ապրելը. այդպես գոյատևում է միայն հոտը՝ անգիտակից մարդկանց և անասունների:*



*Այնտեղ, որտեղ առաջնորդում է «Գոյության պայքար» սկզբունքը, ցանկացած տականք ևս լիիրավ է ոչ միայն գոյատևելու, այլ՝ լինելու գոյության ճարտարապետ:*

*Նման դաստիարակությունը տականքի և բարձրակարգի հնարավորությունները հավասարեցնում է սոցիալական միջակության մեջ, որտեղ, ի վերջո, հաղթում է տականքը:*

**47**

*Թեպետ առավելապես հանդիպում են անբնակ տափաստաններ, բայց ուրիշի մենակությանը մի՛շտ պետք է մոտենաս արարչի հանդիպելու զգուշավորությամբ ու պատրաստակամությամբ, որ նա դեռ չունի «ինքն»-ի գիտակցում:*

**48**

*Ամենից, ինչը կարող է ստիպել կարոտ զգալ, առավել սուր է հանկարծահայտ ակնթարթը, երբ հիշողությամբ հայտնվում եմ անցյալի այն պահում, ուր նույն զգացողությամբ գտնվում էի ապագայում: Կարոտ, որը սարի քամու հոտ ունի, եղյամի նուրբ հպում ու մայրամուտի գունազեղություն: Կարոտ ինքզինքը, որում ոչ կարոտողն է մարդ, նամանավանդ ոչ էլ այն, ինչին ուղղված է:*

**49**

*Փրկչությունից առավել՝ մեծ քաջություն է պահանջվում, որ անվրդով թույլ տաս ոչնչանալ ամենը, ինչը պե՛տք է ոչնչանա՝ ներառյալ ինքդ քեզ:*



**50**

*Հիշողության և պատկերացումի խաչին գամված բանականությանը անտերունչ անասունի հայացքով նայում է մի կենդանի, որը կոչվում է մարդ:*

**51**

*Բոլորն են հակված «սատանայի հետ գործարքի», ուղղակի ոմանք նախընտրում են միայն ուղիղ բանակցություններ: Այդպիսիք համարվում են սուրբ:*

**52**

*Երբ գենետիկ ճարտարապետությունը հասնի նրան, որ նախապես որոշվի, թե ով/ինչ պետք է ծնվի, ապա փոխվելու է միայն այն, որ մարդուն ձևավորող «ուրիշի պատկերացումը» ոչ թե հաջորդելու, այլ՝ նախորդելու է ծնունդին, բայց երկու դեպքում էլ ընդհանուր է մնալու այն, որ մարդու ծնունդը կամքի ազատության դեմ առաջին և ամբողջ կյանքը կանխորոշող բռնությունն է, հետևաբար հաստատումը, որ մարդը (դեռ) այլ բան չէ, քան գիտակցականացված անասուն:*

*Բայց դա էլ անխուսափելի փուլն է զարգացման այն աստիճանի, երբ յուրաքանչյուրն ինքն է սահմանելու իր ծնունդը, ասել է թե՝ ինքնարարումը, հոգևոր գաղափարից զատ, լինելու է նաև կենսաբանական սահմանում, գոյակի ինքնագիտակցում:*



*Պատկերացրեք, թե ինչ վիրավորանք կզգար նախնադարում, միջնադարում, կամ թեկուզ մեկ դար առաջ ապրած մարդը, եթե հնարավորություն ունենար համեմատել իր ապրած ժամանակաշրջանը ներկայիս հետ: Նա, ամենայն հավանականությամբ, իրեն կզգար անհաջողակ և կանիծեր իր բախտը:*

*Նման վիրավորանք սպասում է նաև այս ժամանակաշրջանում ապրողներիս, երբ հեռու ապագայից ինքնարարները մեզ կոչեն մարդ բանական՝ նկատի ունենալով մեր հետադիմական գոյությունը:*

**53**

*Հաջորդ ակնթարթում մահանալու համոզվածությունն իմաստազրկում է (ինքնա)խաբեությունը, ինչպես անմահության իմացությունը: Սրանից չի՞ հետևում արդյոք, որ մարդիկ, առավելապես, կյանքի վերջավորության իմացության և (բայց) բոլոր հաջորդող ակնթարթներում ապրելու հույսի միջև մոլորված գոյակներ են:*



**54**

*Կա՞ այնպիսի բարեմաղթանք, որի իրագործումը բոլորի նկատմամբ չվերածվի աղետի: Կա՞ այնպիսի արդարություն, որ որոշակի բարեմաղթանք իրականացվի միայն որոշակի անձանց համար ու չվերածվի հանցագործության:*

*ՉԿԱ:*

*Ուրեմն ինչու՞ մարդակերպ աստծուն երբեմն չպատկերել տիեզերական օրինաչափությունից գլուխը կորցրած՝ թիթեռ բռնելուց:*

**55**

*Թույլացի՛ր, մահը դեռ որևէ (ան)հավասարում առանց լուծում չի թողել:*

**56**

*Կարգվել հոտի առաջնորդ ու այն քշել անդունդն ի վար. ինչքա՜ն գայթակղիչ պատկերացում է, որի հետևանքի իմացությունը, սակայն, ստիպում է նետվել միայնակ ու պահպանել անդունդի անարատությունը …*

**57**

*Հատուկ նշանակություն ունի ուրիշ մեկն այն, որը օգնում է ոչնչացնել ինձ՝ մարդուս բանական, մնացածը պարզապես գոյություն ունեն:*

**58**

***Մարդը.** ծնվում է կիսատ, ապրում՝ թվացյալ, մեռնում՝ հաստատապես:*



***Եթե մարդ**, ապա ծնվող լույս, ապրող լռակյաց ու ձայնող միայն ընկնելուց՝ այն էլ իբրև ազդարարում, որ առաքելությունն ավարտված է:*

***Եթե …**, ապա միայն որպես **ծառ-մարդ**:*



*Սին են հույսերը և բութ են հավատները բոլոր,*
*եթե չկա ինքնահաղթահարում,*
*Անպետք են իմացությունները հնի և նորի,*
*եթե չկա ինքնաճանաչողություն,*
*Ունայն է ապագան մարդու և մարդկայինի,*
*եթե չկա (չլինի) ինքնարարում:*
*Կա (կմնա) միայն հետապնդող ամոթ, որ մարդը անասունից ոչ թե բարձր է, այլ՝ նույնի ավելին:*





*Անմահությու՞ն: Միայն ո՛չ այս դարում` ո՛չ իբրև մարդ ու ո՛չ մարդկանց հետ …*



*Մարդն էլ, ինչպես ցանկացած անասուն, անասուն է իր ստամոքսի չափով: Տարբերությունն էլ անշուշտ գիտակցության մեջ է, որով մարդը անսահմանորեն ընդլայնում է ստամոքսի տարողունակությունը:*



*Ծնվեց մարդ ու մարդ մեռավ. ահա՛ ամենաօրինակն այն բանի, թե ինչպես կարելի է բոլոր ճակատամարտերը հաղթել և պարտվել պատերազմը:*

***59***

***Ինքնադիտում՝ առ անգոյություն.***

*Ինչքան հեռանում ես հայելուց, այնքան խորն է կլանում քեզ, և դադարում է գոյություն ունենալ, երբ ճակատիդ զգում ես նրա սառնությունը:*

***60***

*Տիեզերքը կաշկանդված չէ որևէ մեկի պատկերացումներով, առավել ևս բարոյականությամբ:*

***61***

*Որպեսզի պարզ լսվի, հեռավորությունն ունի նշանակություն: Հապա ի՜նչ աղաղակող ճշմարտություն է, որը լսելու համար կա մահը: Միթե այն նույն շշունջն է, որը լսելուն խանգարում է անգամ սրտի բաբախը:*

***62***

*Յուրաքանչյուրը պատկանում է ամենին, իսկ յուրաքանչյուրին պատկանում է ոչինչը. անհատական աստվածների հավաքական ոչնչություն:*

*Նա, ում պատկանում է ամենը, ինքը՝ ոչնչին, կա ինքնարար:*



**63**

*Բուն էությամբ՝ երկխոսությունը երբեք երկու անձի զրույց չէ, այն առավելապես երկու անձի մենախոսություն է, որում մեկը մյուսի համար լոկ վկա է, կամ, հազվադեպ, ինքնասուզում է, որտեղ մեկը մյուսի մենակության մարմնացում և ինքնահաղորդակցում է:*

*Ուստի եթե երկխոսություն, ապա միայն ինքնասուզման, և կորչեն բոլոր վկաները ...*

**64**

*Ուրիշի հանդեպ սերը սկսվում է համակրանքից, սեփական անձի հանդեպ սերը՝ հիասթափությունից: Բայց, նաև, քանի դեռ ճշմարիտ չէ սեփական անձի հանդեպ սերը, մոլորություն է ինչպես սերն առ ուրիշը, այնպես էլ համակրանքը, հետևաբար և դեպի սեփականը տանող հիասթափությունը:*

*Ով չի հաջողացնում իր մեջ լուծել այս պարադոքսալ առեղծվածը, սիրո մեջ մնում է համակրանքի և հիասթափության պարանոիդ պարբերականություն ապրող բիճ:*

**65**

*Բարու և չարի շնատամներով հարաբերականություն երախին անհաս է միայն այն, ինչն ինքնարար է:*

**66**

*Եթե, օրինակ, եզը համակվի «իր գոյության իմաստ» ինքնահարցադրմամբ, անպայմանորեն կհրաժարվի եզ լինելուց՝ վտանգելով գոյության կարգը: Եթե նույն հարցադրմամբ համակվեն բոլոր անասունները, ապա կվտանգվի գոյությունն ինքնին:*

*Ահա՛, թե ինչ է կանխել բարձրագույն բանականությունը, երբ մարդկանց, մեծամասամբ, զրկել է ինքնաճանաչողության ունակությունից և անհնար է դարձրել դրա տարածումը քարոզով:*

**67**

***Ճոճի՛ր, անասուն, ճոճի՛ր ...***

*Անասնության այս անեզր օվկիանում, որը կոչվում է մարդ բանականի գոյություն, կա միայն անհատական փրկություն և միայն բարյացակամ հարաբերությունների փոքր կղզյակում: Բայց փրկվելու խեղճության և(կամ) կղզյակն աշխարհամասի վերածելու հիմարության, առավել ևս երկկենցաղ անասունի գոյության համեմատ՝ նախընտրելի է ինքնարարման հավատամքի ցինիզմը, երբ անխուսափելիի իմացությամբ՝ մեջքնիվայր պառկում ես միայնություն լաստին ու տրվում ալիքների ճոճին:*



***68***

***Եթե հնարավոր լիներ հավերժանալ մեկի հետ, ո՞վ կլիներ այդ մեկը …***

*Բարձրագույն բանականությունը մարդուն փրկել է այս ընտրությունից, բայց վերջինիս հիմարությունը համառորեն ձգտում է առնչվել դրան:*



*Բոլորի անցյալի վերծանումից ի հայտ է գալիս նույն բառը՝ հիմար …*

***69***

***Ինքնաշունչ.***

*Ո՞վ եմ ես, - հարցնում է ինքզինքը:*

*Իսկ ո՞վ է հարցնում, - լսվում է ի պատասխան:*

*Հարց, որով մարդ բանականն առանձնացել է ամենայն անասունից, միաժամանակ հարց, որը քանի դեռ հնչում է, ուրեմն մարդը (դեռ) այլ բան չէ, քան ինքնասահմանման ինքնախաբեությանը տրված, տեսակային հատկանիշով որոշվող, համեմատականի ու հարաբերականի դասակարգմանը ենթակա միջանկյալ գոյակ, ով, որպես կանոն, ծնվում է մեկ, ապրում՝ երկատում ու մեռնում՝ բազմատիկ՝ այդպես էլ չհասնելով միավորին՝ հատկանիշին:*

*Ճիշտ այնպես, ինչպես տիեզերքը, արևը, անհատական և բացարձակ որոշակիություն, զերծ լավ ու վատի, բարու և չարի ու առհասարակ համեմատականի ու հարաբերականի անսահման դասակարգումից, որից զերծ չեն անգամ աստվածները, կարող է ունենալ միայն այն, ինչն ինքնարար է:*

***70***

*Ամբոխն արդարությունը պատկերացնում է կախաղանի տեսքով: Տիրում է նա, ով կարողանում է ամբոխին տալ այդ պատրանքը և այնքան, քանի դեռ կարողանում է խուսափել իրագործումից: Նա, ով չափազանց երկար է խաղում այդ խաղը, այն ավարտում է կախաղանի վրա:*

***71***

*Սերը, իրականում, չափազանց անձնական է՝ խոստովանելու համար, անգամ նրան, ում սիրում ես:*



**72**

*Կյանքից, առողջությունից, նյութից զատ՝ կա ինքնարարման ներուժի կորուստ ու դու ծնվել ես արդե՛ն իսկ կողոպտված: Անգամ ձեռքերը, որոնք տվել են օրոր, հանցակից են կողոպուտին …*

**73**

*Աշխարհն անհամեմատ ավելի անտանելի կլիներ, եթե մահվանը պատկանելու փոխարեն՝ հավասարեցումը պատկաներ ապրելուն:*



*Մարդու իմացությունը կյանքի և մահվան մասին լոկ պատկերացում է ըստ հետևանքի, իսկ պատճառների հարցում նա գուշակ է, զեղծարար, վաշխառու …, ի վերջո, հավատացյալ է:*



*Թե որ սիրում ենք այն, ինչը մեզ սպանում է, արդ ի՜նչ ճշմարտություն ես, ՎԵՐՋԻՆ ՄԵԿ …*

**74**

*Ճանաչելու արթմնությունը չկորցնելու համար՝ պետք է ավիրել այն բոլոր հուշերը, որտեղ գիտակցությունը կարող է ապաստանել ապագայի արհավիրքներից:*



*Տե՛ս, նրանք տակավին չեն էլ ծնվել, բայց ունեն կյանքի համոզմունք: Քիչ հեռվից այդ առանձնյակներից ոչինչ չի մնում, միայն սովորույթների մի մեծ կծիկ:*



*Ազատվելու միտքն ավելի մնայուն է դարձնում այն միտքը, որից ցանկանում ես ազատվել, ու չկա ավելի վտանգավոր միտք, քան բոլոր մտքերից ազատվելու միտքն է, որը կպչուն ժապավենի նման իր վրա է հավաքում ամբողջ պայմանականը, ներմուծվածը, ուրիշինը: Հետևաբար դրանցից ու, առհասարակ, ինքնահերքման և ինքնահաստատման պարանոյիկ շրջանից ազատվելու այլ ձև չկա, քան ընդունելը, որի բացարձակը ենթադրում է ընդունել ինքզինքը, ու նոր միայն մեկնարկում է մտքերի ինքնինը, անպայմանականն ու ինքնարարը:*



**75**

*Ընդհանուր առմամբ, աշխարհում կան երկու տեսակի մարդիկ՝ ստեպ-ստեպ հանդիպող նրանք, ովքեր հանդիսանում են մարդու հաղթահարման հիմնավորումը և սակավադեպ հանդիպող նրանք, ովքեր հանդիսանում են մարդու պահպանման արդարացումը: Բայց ինչքան էլ սքանչելի է վերջիններիս գոյությունը և հոգեգրավ՝ նրանց հանդիպելը, այնուամենայնիվ, մարդը մի բան է, որը պետք է հաղթահարվի:*



*Հետո էլ, ինչպես միշտ, շատը պետք է ծառայի քչին, բայց միջակը բարձրին, բարձրը բարձրագույնին: Ապա շատը պետք է վերանա, որ սկիզբ դրվի նոր գոյակի և գոյի թվականության՝ ինքնարարի և ինքնարարության:*



*Որպեսզի մարդն ունենա ֆիզիկական հավերժություն, պետք է բացարձակորեն անկախանա բնությունից, ապա նաև գոյության մեջ առկա՝ իրենից դուրս ցանկացած հանգամանքից, բայց այն, ինչ պատկերվում է արդյունքում, ոչ թե մարդու, այլ նոր էության մասին է:*

*Բոլոր զարգացումներում մարդը վերանում է …*



*Մարդու հաղթահարումը և դրա անընդհատականությունը նշանակում է, որ բոլոր դեպքերում, երբ դա չկա, կա անասունը:*

**76**

*Հանգստացող ցավի հեշտանքը, որով արբենում են իմաստունները՝ զվարթ (ինքնա)ճանաչողության համար, միջակ մահկանացուն օգտագործում է հասարակ ինքնաբավարարման համար: Արդյունքում, հայտնի մոլություններից առավել՝ մարդիկ ախտահարված են ցավամոլությամբ ու, ի տարբերություն այլի, համընդհանուր և անբուժելի:*

**77**

*Մեկի մենակությունը չոր տափաստան է, մյուսինը՝ սաղարթախիտ անտառ, պատահում է օվկիան է, բարձր լեռ է, կամ խորը քարանձավ, …, բայց բոլորի մոտ ընդհանուր է այն, որ ցանկացած մենակություն մեռյալների բնակավայր է: Ուստի, մարդուն իր մենակության մեջ ճանաչելու համար, այլից զատ ու առավել, պետք է գերեզմանափոր լինել:*



***78***

*Նրանք, ովքեր քեզ գիտեն, մահանալու են: Մահանալու են նաև նրանք, ովքեր քեզ իմանալու են: Ի վերջո, մահկանացու են բոլոր նրանք, ովքեր քեզ կարող են իմանալ, ու եթե անգամ կա հավերժական հիշողություն կրող գոյակ, ապա նրան էլ, վստահաբար, հետաքրքիր չէ մահկանացությունդ: Ուրեմն հիշողության տապանաքարը, որի կառուցման համար ներդնում ես ամբողջ կյանքդ, ավելին չէ, քան փոքրիկ հուշում՝ հերթական չապրած հիմարի մասին:*



*Յուրաքանչյուրը բանտարկված է իր իմացության սահմաններում: Մեկը հիմար է իր անգիտության չափ, մյուսը՝ իր գիտունության: Նա, ով հասկացել է գիտելիքի այս վտանգավորությունը, ճանաչողության հետ պետք է իր մեջ վարժեցնի փակ կոպերի գունային խաղին հետևելու սովորությունը:*



*Հերոսացրու հիմարի մեռնելը և նա ոչ միայն կմոռանա ապրելու մասին իր բոլոր դժգոհությունները, այլ իր հետ կմեռցնի բազմաթիվ ուրիշ հիմարների:*



*Ի տարբերություն մտքի խպառ բացակայությամբ տգետի, որին կարող ես նմանեցնել բնության մեջ առկա որևէ անասունի և ունենալ համարժեք վերաբերմունք՝ ընդհուպ համակրանք, առավել անտանելի է ուրիշի մտքերով լցոնված տգետը: «Գրքասեր» այս տականքը, ում հաճախ կարելի է տեսնել գիրքը ձեռքին, կոչված է փչացնելու մտքի բարձրը և տարածելու դրա միջակն ու ցածրը:*

***79***

*Տխրությունն անշուշտ նմանեցնում, բայց չի հաստատում, որ տեսածդ հոգևոր էակ է և ոչ մարդատիպ անասուն: Նա, ով շտապում է փարատել ուրիշի տխրությունը, այդ կերպ բացահայտում է իր ոչ հոգևոր էությունը: Հոգևորը երբեք չի բացառում պահի ինքնասուզումը և զգուշավոր է մոտենում ուրիշի տիեզերազգացությանը:*

***80***

*Գայթակղիչ կին՝ գեղեցիկ ծաղիկների փունջը ձեռքին: Այսպես եմ պատկերում իմ ու կյանքի այն հանդիպումը, որտեղ նա խոստանում է երբեք չներել ինձ միայն այն բանի համար, որ համարձակվել եմ իր հարցերի փունջը համարել անշունչ և իրեն խիստ սազական:*



**81**

*Այո՛, սերը կփրկի աշխարհը՝ մարդուց: Սերը՝ առ մարդու ոչնչացում, ինքնարարի՝ հայտնություն:*



*Սիրեցե՛ք իրար, սիրեցեք այնպես, որ ձեզանից մնա ոչ ոք …*



*Անսերությունից ավելանում են, սիրուց՝ դառնում ավելին:*



*Եթե ասել է «Ես Դու եմ», նշանակում է քեզ տեսել է իբրև միջնորդ իր և ամենի միջև:*



*Տեսնում են նրան, ում սիրում են (նաև այն, ինչ սիրում են), միայն: Ճշմարտությամբ բացարձակ լինելուց զատ՝ սա այնքան ճշգրիտ է բացահայտում սիրո էությունն իբրև բարձր բանականություն, որ որպես հոմանիշ «Սիրում եմ քեզ»-ին՝ կարելի է կիրառել «Տեսնում եմ քեզ»-ը:*

*Իսկ «Սերը կույր է» սոփեստությունն այլ բան չէ, քան միջակի և ցածրի (ոչ բանական) սիրո ամփոփում:*

**82**

*Լիաթոք ծիծաղում է մեկ նա, ով երբեք չի տարվել «ապրելու իմաստը» ինքնահարցադրմամբ, մեկ էլ նա, ով տարվել է չափազանց լուրջ: Մեկը բավականաչափ ապուշ է, որ լինի երջանիկ, մյուսը նույնչափ հանճարեղ, որ խելագարվի, իսկ մնացածը պարզապես խելամիտ են՝ ծիծաղով կեղծ ու կիսատ:*

**83**

*Մարդիկ ավելի հեշտ են տանում սիրելիի մահվան լուրը, քան իմացությունը, որ անհետանալը նրա լավ լինելու գրավականն է(ր): Բոլոր բարեմաղթությունները վերծանելով հպարտության «լույսի» ներքո, չի պատահում մեկը, որ չհամարվի հայհոյանք:*



### *84*

*Խորհուրդ, խրատ, կարծիք: Նա, ով չափազանց հաճախ է ապավինում բարոյականության այս առաքյալներին, ի վերջո վերածվում է մտքի ինքնուրույնությունն իսպառ կորցրած պոռնիկի՝ պարզելով, որ ի դեմս առաքյալների՝ թույլ է տվել իր կյանք մտնել կավատներին:*



*Եթե ըժոխք, ապա այնտեղ հատուկ տեղ ունեն նրանք, ովքեր սրբաղասվել են կրոնի և բարոյականության կողմից:*



*Սեփական գիտակցության հետ հնարավոր է միայն խորքային հաշտություն, իսկ մակերեսին այն անընդհատ ենթակա է միջավայրի (ուրիշի) ազդեցությանը՝ թեկուզ երբ կա միայն երկրորդը: Հաշվի առնելով ուրիշի ազդեցության միջոցներն ու ծավալները, բոլոր այն դեպքերում, երբ չես գտնվում ինքնասուզման մեջ, առաջնահերթ հենց սեփական գիտակցությանդ պետք է վերաբերվես այնպիսի վերապահումով, ինչպիսին կարող ես ունենալ դաշնակցային առաջարկ անող թշնամուդ նկատմամբ:*

*Իսկ պարզելու համար, որ սեփական (մակերեսային) գիտակցությունդ կարող է լինել (ու կա) մեկ թշնամիդ, բավական է փորձել հրաժարվել որևէ վնասակար սովորությունից ու տեսնել համոզելու նրա ձեռնածության ծավալները:*

### *85*

*Արարիչները ծնվում են այնտեղ, որտեղ սպանվում են աստվածները: Սպանե՛ք ձեր աստվածներին:*

### *86*

*Զոհը, հենց միայն այն բանի համար, որ զոհ է, չի կարող անմեղ լինել:*

### *87*

*Հպարտությունն է եսի և ամենի միջև սահմանային պատը, այն նույն՝ սիրո գնդակահարության պատը:*

### *88*

*Պարզագույն ճշմարտություններից մեկն էլ այն է, որ մարդիկ նախ բաժանվում են երկու խմբի՝ դու և մնացած բոլորը, հետո միայն վերջինն ուրիշ այլերի:*



***89***

*Խոստովանում եմ, որ այն, ինչը բարձրաձայնվում է, չի կարող լինել բացարձակ ճշմարտություն, կարող է լինել այն գտնելու փորձ և, իբրև այդպիսին, անկեղծ: Ու սա էլ, քանի որ չի լռեցվել, ավելին չէ, քան փորձը, բայց ավելին է, քան անկեղծությունը:*

***90***

*Գիտեմ՝ կա հաղորդակցության աստիճան, որտեղ բառը խավարամտության և մարդայնացման հատկանիշ է:*

***91***

*Ճանաչել-յուրացնել-արարել՝ ինքզինքը: Այն ամենը, ինչը սահմանում, դարձնում կամ պահում է մարդ, դեմ է գոյության այս միակ բարձրագույն ձևին:*

***92***

*Առհասարակ, վկաների բացակայությունը շատ բաներ է մեռցնում՝ ընդհուպ մարդուն ինքն իր մեջ:*



*Այնտեղ, ուր իշխում է միմյանց (չ)ապրելու նկատմամբ անտարբերությունը, մահը դառնում է մարդու՝ իր նկատմամբ բարեսրտության վերջին, ապա նաև միակ հնարավորությունը: Եթե այսօր հանգել ես այս մտքին, ապա թող վաղը լինի առանց ազերթ հուղարկավորությունդ, մյուս օրը՝ առանց վկա վերածնունդդ:*

*Միջամատդ քեզ օգնական …*



*Նա, ով մասնակցում է վկաներիդ սպանությանը ու ինքնասպանվում է՝ իբրև վերջին վկադ, երբ արդեն պատրաստ ես ինքնարարման, կարող է կոչվել արարիչ:*



*Պայմանավորված աշխարհընկալմամբ, բոլոր դեպքերում, երբ մենակության մեջ մարդն է, նա միշտ վկան է վեճի՝ աստծո և նեռի, գիտության և հավատի, բարու և չարի …, ու բոլոր դեպքերում, երբ ինքն է դառնում վեճի կողմ, դիմացը կանգնում է անասունը:*



*Կան հրդեհներ, որոնք, թեկուզ ինքնահրկիզման գնով, պետք է թեժացնել՝ մարելու փոխարեն, որ լինի ԻՆՔՆԱՐԱՐՈՒՄ:*





*Վկաներն են կանխորոշում ով լինելը:*

*Նա, ով հաջողացրել է մտածողությունն ազատել բոլոր վկաներից, չի կամենա լինել այլ մեկը, քան ոչինչն է, քանզի չի ցանկանա նվազը, քան ամենն է:*

***93***

*Վաճառականության հանդեպ խորքային հակակրանքով պայմանավորված՝ իմ խիղճը հաղորդակից է միայն ցավին, որը հնարավոր չէ վերածել բառի:*



*Շրջապատող իրականությունն այդպիսին համարվում է միայն այն բանի համար, որ դրանում բոլորն են, այնինչ դա մասնակիցներից յուրաքանչյուրի (ինքնա)խաբեությունից հյուսված սարդոստայն է:*

*Ով գեթ մեկ անգամ հաջողացրել է տեսնել սա, այդուհետ երբեք թույլ չի տա շեղվել ինքն իրենից:*

***94***

*Սուտը վախի հետևանք է, վախը՝ չիմացության, միշտ: Ով շարունակում է գնալ խաբեության ճանապարհով, միաժամանակ խոստովանում է, որ իմացության մեջ անկարող է և դա ընդունելու համար՝ տկար: Տկարությունը ևս չիմացություն է …*

*Սուտ է նաև լռությունը, եթե իմացություն չէ, որ ճշմարտության հասցեատերը անկարող և/կամ տկար է:*

***95***

*Չկա առավել դժվարակիր կարոտ, քան կարոտն է ինքզինքը, հատկապես, երբ այն ուղղված է ոչ թե անցավորին, այլ նրան, ով դեռ պետք է ծնունդ (հ)առնի …*



*Միակ վայրը, որտեղ սոսկալի է լինել ավելորդ, սեփական մենակությունն է:*



***96***

*Հումորը, անշուշտ, կարող է լինել դժվարությունների, ընդհուպ դժբախտությունների հաղթահարման միջոց, բայց դրա չափազանց կիրառությունը սպառնում է վերաճել բնազդային մակարդակի ինքնապաշտպանական սովորույթի, որը դրսևորվում է ցանկացած խնդրի պարզայում՝ խժռելով այն կրողի բանականությունը: Այս սովորույթը, ինչպես ցանկացածը, հակված է վերածվելու սոցիալական վարքի՝ այդ կերպ մարդկային խմբերը, ընդհուպ ամբողջ ժողովուրդ, վերածելով կապիկների խմբի:*

*Պարզելու համար, որ որևէ հանրույթ հիվանդ է «կապկի հիվանդությամբ», բավական է նկատել, որ նրանում գերիշխում է ծաղրը՝ միմյանց և ամեն ինչի հանդեպ:*

***97***

*Մարդը վստահ քայլերով վերադառնում է քարանձավ: Ո՞վ է դուրս գալու քարանձավից՝ ինքնարա՞րը, թե՞ նորից անասունը. ահա՛ թե ինչումն է մեկ ու միակ ընտրանքը:*

***98***

*Արդ ո՛վ ես դու, պատից այնկողմ, որ ԿԻՐՔՍ, եզակի անգամ, պատը քանդելու փոխարեն՝ սրբացնում է այն՝ իբրև ինքնասուզման աղոթարան:*



***Հառաչ ինքնարարի***

*Բաց արա կծիկը մեղքերիս, գործիր ինձ համար գորշերանգ պարեգոտ, որ կրեմ մերկացած հոգուս և սիգալով քայլեմ մենության մեջ, ո՜վ սիրելիս անէ …*



*Դու ինձ համար «Լիլիթ», «Եվա» ու «Մարիամ»,*<br>*ես գոյությամբ ինչպես «Նոյ»:*<br>*Դու ինձ համար կրքի օվկիան,*<br>*ես մակույկին ծարավահյուծ:*<br>*Արդ ասա ինձ, իմ անէ,*<br>*ինչպես չլինեմ գիշերասեր, անձրևապաշտ …*



*Հրաբուխվում է կիրքս, երբ հանդիպում եմ քեզ …*<br>*… իսկ դու ամենուրական ես:*





***Սպասում ինքնարարի***

*Ինձանից առավել ոչ ոք չի լռել քո անունը, անէ:*



*Պատրանք է պատը մեզ բաժանող, ինչպես պատերը բոլոր: Խոսի՛ր ինձ հետ, այնկողմնային …*



*Ես շփոթվում եմ քո ներկայությամբ, քանի դեռ քեզ համարում եմ ինձանից բարձր, իսկ իրականում, գուցե, դու չնչինություն ես, և խոստովանում եմ, որ սթափեցնեմ ինձ, հետևաբար տեսնեմ քեզ:*

*Երբևէ մեկն ունեցե՞լ է սիրահարվածության նման խոստովանություն՝ ճանաչելու անկեղծ ու այդչափ մեծ ձգտում:*

***99***

*Բոլորին ուղղված իրական սերը կարող է միայն մեկ վերջաբան ունենալ՝ ոչնչացնել բոլորին, կամ ինքզինքը: Ուրեմն, ցայժմ մարդկությունը չի ունեցել առաջին մեկին, կամ ունեցել է միայն երկրորդներին և հենց սա է նրա ցնորական գոյության պարազան, պատճառը ու միակ կերպը:*

***100***

***Վասն ինքնարարման***

*Ես եմ իմ սկիզբը, իմ ամրոցն ու տաճարը: Ե՛ս եմ իմ վերջը …*



*… և ուր է այդ վերջում մեռնող հույսը,*
*և ի՞նչ է դա,*
*և ինչու ես կամ դեռ՝ իբրև մարդ …*



*Գլուխս ափերիս մեջ, արմունկներս ծնկներիս*
*ու չկա այլ հենարան ինքնախույզ մտքիս:*

***101***

*Ինքնարարը «մեղսավոր է» միայն այն բանի համար, որ տիեզերական իրավունքը, որն առաջնորդում է իրեն, անդին է բնական և/կամ մարդկային օրենքից:*



**102**

*Մարդը նրանում տեղ չունի. ահա՛ պատասխանը (ինքնա)հարցադրման, որը կարող է ունենալ նա, ում արտոնված է մուտքն իմ մենակություն, նաև նա, ով դուրս է շպրտվել դրանից:*

*Ով կա՝ կա իբրև անմարդկային, վերմարդկային էություն:*



*Ոչ միայն կիսատ, նաև ամուլ են այն բոլոր կրքերը, որոնք չես ապրել նրա հետ, ով մարմնավորում է մենակությունդ, քանզի իբրև արարում՝ կա միայն ինքնարարումը, ու եթե կրքի մեղք, ապա միակը, որի ունենալն ու չապրելն է մեղանչականություն՝ ինքդ քո, հետևաբար ԱՄԵՆԻ դեմ:*



*Մենակությունը չունենալը, լքելը կամ կորցնելը չէ, այլ գիտակցումն է իրողության, որ այդպիսին կաս, եղել ես միշտ: Այն հաղթահարելու կամ փարատելու ինքնախաբեությունների հորձանուտում չմնալու համար՝ կա միայն մեկ հնար՝ ընդունել իբրև գոյության ներքին տարածականություն, այդ կերպ, նաև, որպես արտաքին անսահմանությունն ընկալելու միջոց:*



*Առ երկինք հայացքով՝ խաչվել հողին, ու չկան տուրք տալու ուրիշ հասցեատերեր, իմաստ և կերպ, միաժամանակ, բարձր բանականությունն ազատականացնող մտակենտրոնացման վիճակ ինքնարարի համար:*

**103**

*Մարդը կապիկից չէ, մարդը կապկանում է:*

**104**

*Քան կամ իրականում, մեկի մտքում ավելի ուրախ եմ, մեկի մտքում ավելի տխուր: Մեկը մտքում խոսում է հետս, մեկը մտքում հետս լռում: Մեկի մտքում սեր եմ ապրում, մեկի մտքում արհամարհվում: Մեկը ծնում է ինձ, երբ փորձում եմ մեռնել, մեկը մեռցնում է, երբ փորձում եմ ծնվել: …*

*Մեկն էլ հիմա իմ մտքում այս դամբանականն է կարդում:*



**105**

*Բարձունքն ու անդունդը ստեղծում են իրար: Ինքնարարների համար սրանից կա մեկ հետևություն՝ հատել սահմանային բոլոր գծերը և վերացնել դրանց տարբերությունը:*

**106**

*Ամենքը կախված է իր աճեցրած ծառից, ինքնահատկությամբ առանձնանում են նրանք, ովքեր նաև տնկել են իրենց ծառերը, ու մշտնջենական է զեփյուռը, որ մեռյալների ճռճքը չդադարի: Ահա՛ «Եդեմեկան պարտեզի» իմ պատկերումը:*

**107**

*Եթե հիշողությունն է պայմանավորում միասնությունը, որը գոյակն ընկալում է որպես իր լինելիություն, ապա այս անցավոր գոյությունն էլ բավական է մի քանի կյանք ապրելու համար: Մոռացությամբ նորանալ, երբ էությամբ ավարտել ես ու կաս միայն ձևականի սպասումով …*

**108**

***Գիտակցությունների պատերազմ***

*Երբ զավակն է ոչնչացնում ծնողին, ծնողն առանձնապես չի էլ դիմադրում, դեռ ավելին՝ ընդունում է ներումով և օրհնանքով, համարելով սրբադասման արժանի ինքնազոհություն:*

*Մինչ դու զբաղված ես քեզանով, ուրիշը զբաղվում է քո երեխայով՝ ծնված ու դեռ չսերված:* ***Ես էլ եմ այդ ուրիշը:***

**109**

*Լավագույնը չի տեսնվել, չի տեսնվել նաև վատագույնը: Բացարձակը չի կարող հասանելի լինել նրան, ինչը գոյությամբ հարաբերական է, իսկ ինչը գոյությամբ ինքնարար չէ, հարաբերական է: Ճշմարտությունը միշտ բացարձակ է և անդին է լավ ու վատից:*

**110**

*Բարոյականությունը վայրին (իսկականը, կիրքը, կամքը) զսպող թոկ է, որի մյուս ծայրը միշտ ուրիշի ձեռքում է:*

*Բարոյականության անձնականը, առավել ևս սեփականը չի լինում, չի կարող լինել: Նա, ով նման մտքով փորձում է իրեն առանձնացնել ամբոխից՝ վերջինիս թելադրած վարքին հետևելու պարագայում, այդ կերպ բացահայտում է կորսված անհատականության իր ամոթը և այն հաղթահարելու վախկոտությունը:*





*Ժամանակակից հասարակության տիպ՝ գիշատիչների բազմազանություն, որոնց վարժեցրել են ապրել հոտով:*

*Ով տևական ժամանակ չի ապրում իր վայրին (իսկականը, կիրքը, կամքը), ինչ-որ պահից սկսում է բուրել հոտի հոտով, իսկ ով բավականաչափ շրջահայաց չէ՝ այն որպես նրբին գաղտնիք ապրելու համար, դատապարտված է հոտի կճղակների տակ հայտնվելուն:*

*Այն, ինչ հանդիպում է վայրենասերներիս, հաճախ անդուր է հոտով, կամ արդեն փչացրած է կճղակների տակ, իսկ մեր ճաշակին հաճո շրջահայացները հազվագյուտ են:*

***111***

*Նշանակում է բավականաչափ նրբենի չէ՝ գաղտնիք մնալու համար, եթե դառնում է ակներև:*

## *Գորշի գրքերը*




***2015***




***2017***




***2019***




***2022***



*Գորշի եռանկյուն*

*Խորհրդանիշ՝ Բարձրագույն Եսի, նույնն է՝ ինքնարարի, նույնն է՝ երրորդ մեկի, կամ, պարզապես, Գորշի եռանկյուն:*

*Կազմված է հայերեն երեք «ի» տառերից, որոնք արտահայտում են ինքնաճանաչողությունը, ինքնահաղթահարումը (նույնն է՝ ինքնաոչնչացում) և ինքնարարումը: Տառերի համակցությամբ կենտրոնում ձևավորվող եռանկյունը խորհրդանշում է Բարձրագույն Ես-ի, ինքնարարի, երրորդ մեկի արարումը, ինչին և միտված է ինքնաճանաչողություն, ինքնահաղթահարում, ինքնարարում փոխպայմանավորված եռամիասնությունը: Եռանկյան գագաթներից դուրս եկող կոր թևերը պատկերին հաղորդում են պտույտ, ինչն արտահայտում է ինքնարարման հավերժականությունը, ինչպես նաև Բարձրագույն Ես-ի (ինքնարարի, երրորդ մեկի) փոխադարձ, փոխլրացնող կապը ինքնաճանաչողություն, ինքնահաղթահարում, ինքնարարում եռամիասնության և դրանցից յուրաքանչյուրի հետ առանձին, միաժամանակ՝ դրանց փոխադարձ, փոխլրացնող կապը միմյանց հետ:*

*Տառերի հայերեն լինելը խորհրդանշում է գաղափարի ծագումը, բայց ոչ պատկանելիությունը, այն համա- և վերմարդկային է:*

*Հիմնական գույնը գորշն է, ինչը խորհրդանշում է անդիմը, հետևորդության, նաև զանգվածների առաջնորդման, քարոզի, «կրոնականության», ստրկության, իշխանատենչության և այլնի մերժումը, սահմանում է դրա վերաբերելիությունը բացառապես անհատականությանը: Սույն մեկնաբանությամբ՝ խորհդանիշը կոչ- ված է համարվել ինքնարարման հավատամքը կրողների սիմվոլ:*

***Խորհրդանշի հեղինակ՝ Տիգրան Գորշ, 2021թ.***